ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ-«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 8 1967

ՆՈՐԱՅՐ ԵՊՍ. ՊՈՂԱՐՅԱՆ
(Երուսաղեմ)

# ՆՈՐԱԳՅՈՒՏ ՀԱՏՎԱԾ ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑՈՒ «ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ»

Երուսաղեմի ս. Հակոբյանց վանքի մատենադարանի 1419 թվականին ընդօրինակված № 1 հսկայակերտ ճառընտիրին երկրորդ հատորին մեջ, էջ 720բ—728բ, հանդիպեցանք ընդարձակ հատվածի մը, առնված Ղազար Փարպեցիի Պատմութենեն, որ կներկայացնե Առաջին դրվագին կեսեն ավելին. Տփղիսի 1904 թվի տպագրության համաձայն էջ 12—28:

Այս նորագյուտ հատվածը մեծ արժեք կներկայացնե՝ նկատելով որ այն գրի առնված է Փարպեցիի ծանոթ առաջին ձեռագրեն երկու և կես դար առաջ:

Հատվածիս գրչությունը ուղղագրական տեսակետե ունի թերություններ և ճառընտիրներու գրիչներուն հատուկ սովորության համաձայն կատարված են նաև կրճատումներ նշանակելի քանակությամբ: Այնուհանդերձ հատվածս կպարունակե բազմաթիվ ընթերցումներ, որոնց շնորհիվ Փարպեցիի բնագրին մեջ կկատարվին կարևոր սրբագրություններ: Ատոնց մեջ ամենեն նշանավորն է «Հմուտ երգողական տարիցն» ասության փոխարեն ձեռագրիս տված ընթերցումը, «Հմուտ քերթողական տարիցն»: Այս և ուրիշ սրբագրությանց մասին ավելի ընդարձակ գրություն մը պատրաստած ենք արդեն:

Հատվածիս ընդօրինակությունը կատարեց օր. Արփինե Հ. Սրճունի՝ մեր առաջնորդությամբ: Բնագրեն ներս կատարեցինք շատ քիչ միջամտություն, կարգը մը սխալներ առնելով կոր փակագիծներու մեջ, և երբեմն ավելցնելով անհրաժեշտ բառեր անկյունավոր փակագիծներով:

Այս հատվածին առանձին հրատարակության նպատակն է ընծայել նպաստ մը Ղ. Փարպեցիի Պատմության բնագրի սրբագրության:

## ՎԱՍՆ ՆՇԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԳՐՈՑ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՎՌԱՄՇԱՊՀՈՅ Ի ՁԵՌՆ ԽՆԴՐՈՅ ՍԱՀԱԿԱՅ ԵՒ ՄԵՍՐՈՎԲԱՅ

Իսկ յետ ժամանակի ինչ անցանելոյ, բերեալ ատելութիւն նախարարացն Հայոց, որ ընդ Պարսից իշխանութեամբ էին, ընդ թագաւորին իւրեանց՝ Խոսրովու, վասն երթալոյ տակաւին և նուազելոյ թագաւորութեանն յազգէն Արշակունեաց, յաղագս առաւելեալ ի նոսա գործոց իւրեանց չարեաց, ըստ բանի սուրբ քահանայապետին առաջնոցն եւ այլոց եւս բազում առաքինի արանց, որք անլուր բերանովք բողոք բարձեալ յանդիմանէին զանարժան գործս նոցա, և զմատնումն ընդ լծով խիստ և անարժէն ծառայութեանն Պարսից, նախատելով բարբառէին: Երթեալ այնուհետեւ առնէին բանսարկութիւն առ Շապհոյ արքային Պարսից, եթէ Խոսրով կարծեցուցանէ զինքն ընդ միամիտ սիրելի և

հնազանդ. և է այս ամենայն ցուցակութիւն նորա առ քեզ ատելութիւն և ոչ ստուգութիւն, բայց իւր ուխտ և խորհուրդ ընդ թագաւորին Յունաց է, և միշտ հրովարտակաւք, երթևեկ պատգամաւորաւք, խաւսի ընդ նմա ի խաղաղութիւն. բայց դուք որպէս իմանայք հատուցանել նմա ըստ նորա խաբէութեանն զայն դուք իշխէք: Եւ կարծէին բանսարկուքն յիւրեանց անմիտ խորհրդոցն կորուսանել զնա, և անձանց և աշխարհի բարոյ իմիք և շինութեան լինել պատճառ, և ոչ գիտէին եթէ տակաւին ի մաշումն և ի չար ծառայութեան վասն մեղաց իւրեանց մատնեալք լինէին յԱստուծոյ:

Իսկ զայն լուեալ խնդութեամբ և ախորժելով ունկնդրութեամբ Շապհոյ արքային Պարսից՝ հրաման տայր վաղվաղակի հրովարտակաւ զԽոսրով ի դուռն կոչել: Եւ նորա ոչ զգացեալ զբանսարկութիւնն Հայոց իշխանացն, վաղվաղակի որպէս առ իւր իշխան և բարեկամ ի դուռն հասանէր: Եւ Շապհու թշնամանեալ զնա պատուհասէր. այլ թերևս և վասն յաւժարութեան մերժել զնա ի թագաւորութենէն, և յանդիման կամեցեալ առնել զնա չարախաւսացն, վաղվաղակի մերժեալ ընկենոյր զԽոսրով յիշխանութենէ թագաւորութեան իւրոյ, և ուխտէր այլ ոչ ևս տեսանել զաշխարհն Հայոց, անդ արգելեալ յաշխարհին Պարսից պահէր:

Իսկ իբրև մերժեալ լինէր Խոսրով ի թագաւորութենէն, խնդրէին Հայք ի Շապհոյ այլ թագաւոր իւրեանց. և նորա հաւանեալ թագաւորեցուցանէ նոցա զՎռամշապուհ զեղբայր նորին Խոսրովու, յազգէն Արշակունեաց և արձակէր ի Հայս:

Ի ժամանակս սորա թագաւորութեանն տուան շնորհք Հոգւոյն Սրբոյ յամենախնամէն Աստուծոյ, առն միում ճշմարտի Մեսրոբ անուն կոչեցեալ, որ էր ի գաւառէն Տարաւնոյ, ի Հացեկաց գեղջէ, որդի առն որում անուն էր Վարդան. ի տիս մանկութեան իւրում ուսեալ զդպրութիւն յոյն, զինուորեալ ի դուռն Հայոց արքային Խոսրովու, կարգեալ յերամ մատեան արքային դպրացն, վասն զի ասորի և յոյն գրով վճարէին յայնժամ զգործս թագաւորացն արքունի դպիրքն, զվճռաց և զհրովարտակաց: Եւ սպասաւորեալ անդ ամս կարգաւորապէս առանց եպերանաց: Յետ այսորիկ տենչացեալ կարգի վանականութեան և երթեալ ի վանս բազմութեան եղբարց, և ընկալեալ ըզկերպարան վանականութեան, լինէր ընդէր յամենայնի երևելի, հրաժարեալ յամենայն աշխարհազգրաւս երկրաւոր զբաղմանց: Ապա յանապատական կրաւնն փոխեալ, և զարմանալի և երևելի և հռչակաւոր, և կայր յանապատ, ի բազում տեղիս քարանձաւաց, մեծաւ առաքինութեամբ և խստամբեր վարուք, բազում և այլ կրաւնաւորք և աղաւթաւէր եղբարք: Մինչև յամն հինգերորդ արքային Հայոց Վռամշապհոյ, եղբաւր Խոսրովու: Եւ զայս եթէ որ կամեսցի գիտել հաւաստեաւ ի պատմութենէ գրոց առն ցանկալոյ Կորեան, աշակերտի երանելոյն Մեսրոպայ, կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց նորա, և զգիր Հայերէն նշանագրացն թէ երբ, և կամ յոր, և կամ յայր ուրուք ի ձեռին գտան:

Եւ այսպէս բազմաժամանակեա զմտածութիւն երանելոյ առն Մեսրոպայ ընկալեալ ամենախնամ մարդասիրին Աստուծոյ, զաւրացոյց զնա Հոգով սրբութեամբ իւրով: Քանզի հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Աստուծոյ Մեսրովբ, տեսանելով զմեծ ջանն և զառաւելապէս ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս, որք բազում թոշակաւք, հեռագնաց ճանապարհաւք, և բազմաժամանակեա ջերմամբ մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոց ասորի գիտութեանն: Քանզի պաշտաւն եկեղեցւոյ և կարդացմունք գրոց սրբոց ասորի

ուսմամբ վարէին ի վանորեայս և յեկեղեցիս Հայաստան ժողովրդոց, յորմէ ոչ ինչ էին կարող լսել և ուսանել ժողովուրդք այսպիսի մեծ աշխարհի, և լինէր պաշտաւնէիցն աշխատութիւն և ժողովրդոցն անշահութիւն յանկրութենէ լեզուին ասորոց: Զայս ի բազում ժամանակաց ընդմտաւ ածեալ երանելոյ առն Մեսրոբայ, և փղձկացեալ յանձն իւր, մանաւանդ լուեալ թէ գոյ նշանագիրք Հայերէն լեզուիս: Զաւրացեալ Սուրբ Հոգւոյն յորդորմամբ և եկեալ առ Սուրբ կաթողիկոսն Հայոց Սահակ, ցեկուցանէր և նմա զիւրոյ զբազմաժամանակեա մտածութեանն խնդիրս, և ընկալեալ ի նմանէ քաջալերութեան աւետիս, թէ զաւրացեալ պինդ կաց, առեալ ընդ քեզ այլ այրս աշակերտս ի քահանայից զոր ես հրամայեմ, և ուր տեղեկանայք ի Հենգենայսն բերեալ առ իս ուղղեմ զայն, քանզի յոյժ դիւրին է գիւտ իրացդ զոր հայցեսդ: Բայց նախ արժան է մեզ ազդացուցանել թագաւորին զպէտս այդպիսի մեծ և կարևոր խնդրոյդ: Վասն որոյ յառաջ քան զաւուրս ինչ ոչ բազում, ճառեալ յեկեղեցւոջ յաղագս կարաւտութեան այդպիսոյ պիտոյից ասացեալ է ուրումն ցարքայ, թէ տեսի նշանագիրս Հայերէնս առ ումեմն եպիսկոպոսի ի գեաւղ միում, և թագաւորն յիշէ զասացեալսն, քանզի և ինձ նա պատմեաց:

Եւ մտեալ Սուրբ կաթուղիկոսին Սահակայ հանդերձ երանելւոյն Մեսրովբաւ առ թագաւորն Վռամշապուհ, և իմացուցեալ նմա զպէտս իրացն յիշեաց և ինքն արքայն զխաւսեցեալսն վանականին վասն նորին իրաց ընդ նմա, զոր և նոցա պատմեալ ուրախացոյց: Եւ նոցա լուեալ զայս ի թագաւորէն փութացուցանէին ասելով, թէ ճեպեա յաղագս մեծ աւգտաբեր աշխարհիս Հայոց գիւտի այսորիկ ի ժամանակս քո, որ շատ աւելի առ յապայսն բերէ քեզ յիշատակ անմոռաց և աւգուտ երկրաւոր վայելից, քան զիշխանութիւն թագաւորութեանդ քո, և կամ որք յառաջ քան զքեզ քո նախնիքն էին յազգէն Արշակունեաց:

Եւ թագաւորին լուեալ զայս ետ փառս Աստուծոյ, և խնդալից եղեալ, որ ի ժամանակս թագաւորութեան նորա զայսպիսի հոգևոր կենաց փափագ ժառանգեաց աշխարհս Հայոց:

Վաղվաղակի ստիպով դեսպանս առաքեալ զՎահրիճ ումն անուն կոչեցեալ ի ծնողաց իւրոց, հանդերձ հրովարտակաւ, առ այր մի երէց Հաբել անուն, որոյ ասացեալ էր յառաջագոյն ցարքայն, որ և մերձաւորն էր առն բարէպաշտի Դանիէլ եպիսկոպոսի, առ որում նշանագիրք Հայերէնք կային: Եւ երանելւոյն Հաբելի ընկալեալ զհրովարտակն ի Վահրճայ, և լուեալ զ(գ)իրսն փութանակի հասանէր առ եպիսկոպոսն Դանիէլ: Եւ նախ անդէն ի նմին Դանիէլէ ինքն տեղեկանայր զկարգ նշանագրացն, և ապա առեալ ի նմանէ առ թագաւորն և առ Սուրբ հայրապետն Հայոց Սահակ, և առ երանելին Մեսրոբ հասուցանէր: Իսկ արքայն Հայոց սուրբ հայրապետաւն Հայոց Սահակաւ և երանելւոյն Մեսրոբաւ, ընկալեալք զնշանագիրսն ի Հաբելէ ուրախ եղեն:

Եւ այսպէս գտեալ գիւտի նշանագրացն, ձեռն ի գործ արկանէր երանելին Մեսրովբ երիբելով զնա Սուրբ հայրապետն Հայոց Սահակ, և զիւրահնար ճանապարհ ցուցանելով կարգաւորութեան գրերոյն և հեգենային ուղղաձայնութեան, տալով նմա աշակերտս և այլ այրս բանիբունս և մտացիս ի քահանայիցն Հայոց, որք էին առ սակաւ մի, որպէս եւ երանելին Մեսրոբ, մերձաւորեալ յունարէն հեգենային, որում առաջնոյն անուն էր Յոհան, ի գաւառէն Եկեղեաց, և երկրորդին Յովսէփ, ի Պաղնայ տանէն, և եր(կ)րորդին Տէր ի Խորձենոյ, և չորրորդին Մուշէ ի Տարաւնոյ, որոց աւգնելովն զաւրէր Երանելին Մեսրոբ հանդիպեցուցանել զհայերէն աթութայսն, ըստ կարգման սեղով-

բայիցն յունացն, սակս հարցմամբ և ուսանելով ի Սուրբ Կաթուղիկոսէն Սահակայ, որ յոյժ ալցեալ վարժիւք անցուցանէր զբազում գիտնականութիւն յունաց, եղեալ կատարելապէս հմուտ քերթողական տառիցն և հռետորական յորդասաց յայտարանութեանն, եւ առաւել տեղեակ լեալ փիլիսոփայական արհեստիցն:

Կարգեալ այնուհետեւ փրկչին առաջնորդութեամբ զգիր գրելոյն հայերէն զհեզենայիցն ուղղել յարբինուածս, ցանգային կարգել դպրոցս և ուսուցանել բազմութիւն մանկանց. քանզի ամենայն անձն յորդորեալ փափագէր յուսումն հայերէն գիտութեանն, որպէս ի խաւարէ, յասորի տանջանացն զերծեալք, ի լոյս փութային: Բայց տարակուսեալք կասէին յանչքութենէ գրոց սրբոց. քանզի դեռ եւս ոչ գոհէին հայերէն լեզուութեամբ սուրբ կտակարանք եկեղեցւոյ: Եւ երանելին Մեսրոպ և որ ընդ նմա պատուական քահանայք էին, ոչ զաւրէին համարձակել յայսպիսի սաստիկ և կարեւոր գործ, թարգմանել գիրս ի յոյն լեզուէն ի հայ բարբառս, վասն զի ոչինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգից յունական ուսմանն:

Ապա ժողովեալ ամենայն քահանայք աշխարհին Հայոց, հանդերձ երանելեան Մեսրոպաւ, և ամենայն նախարարք աշխարհիս Հայոց, և մեծամեծ տանուտէրաւք առ թագաւորն Վռամշապուհ, և հանդերձ թագաւորաւն սկսան աղաչել զսուրբ կաթուղիկոսն Հայոց Սահակ արկանել զանձն յաշխատութիւն հոգւոյ, և թարգմանել զԱստուածաշունչ կտակարանս ի յոյն [լեզուոյ] ի հայ բարբառս. և ասէին թէ որպէս սուրբ նահատակն Քրիստոսի Գրիգորիոս պահեալ ի խոշտանգանս անվնաս աշով հզաւրին ի լուսաւորութիւն գիտութեան աշխարհիս Հայոց տուաւ պահել, շնորհեցաւ և քեզ նորուն շառաւիղի, վիճակ պայծառութեան պաշտամանս այսորիկ, սկիզբն ուսման գործոյ մշակութեան, և լինել նմանող սուրբ նախնոյն քո, որ յանգիտութենէ ի ճշմարիտ Աստուածգիտութիւն առաջնորդեաց աշխարհիս Հայոց: Եւ արդ դու լնլով զպակասութիւն զայս, մնացեալ ի սուրբ նախնոյն քո, զոր պահեաց քեզ Աստուած, որ նմանեալ ճշգրտապէս աւրինակեցեր ի քեզ զվարս սուրբ հաւրն քո Ներսէսի:

Եւ լուեալ զայս ամենայն՝ բարեացապարտ կաթուղիկոսն Հայոց Սահակ ի թագաւորէն և յամենեցունց, զուարճացաւ յոգի իւր, փառաւորելով զփրկիչն ամենեցուն զՏէր Յիսուս Քրիստոս: Եւ կամաւոր յաւժարութեամբ ետ զանձն իւր ի գործ, պանծացեալ Աստուծոյ աւգնականութեամբն, և անվեհեր ջանալով զցայգ և զցերեկ՝ թարգմանէր զկտակարանս ամենայն, զխաւսեցեալս ճշմարիտ մարգարէիւք Սուրբ Հոգւոյն, և զհաստատեալս և զկնքեալս երջանիկ առաքելաւք զնորոց կտակարանաց զլուսաւոր և զկենդանատու քարոզութիւն նովին [Հոգւով]:

Եւ տարեալ ի գլուխ սրբոյ Հայրապետին Սահակայ զգործ մեծ հոգեւոր վաստակոյն, կարգեցան վաղվաղակի դպրոցք հայերէն ուսմանն. բազմացան դասք դպրացն, նեւեսս առնելով զմիմեամբք. զարդարեցան պաշտամունք եկեղեցւոյ, յորդորեցան բազմութիւնք ժողովրդոց արանց և կանանց ի տաւնս փրկչին և ի ժողովս մարտիրոսաց պայծառացան եկեղեցիք, շուք առին վկայարանք սրբոց: Եւ զի միանգամայն ասացից ըստ բանի Սուրբ Մարգարէին Եսայեա, թէ լցաւ երկիր ամենայն Հայոց գիտութեամբ Տեառն ի հոգեւոր վաստակոց սրբոյ հայրապետին Սահակայ, եւ շնորհիւ ամենախնամ փրկչին Քրիստոսի, կատարեալ այս ամենայն ի ժամանակս Վռամշապհոյ, ըստ յառաջագոյն գրելոյն, և լուսաւորեալ աշխարհս Հայոց՝ եկաց յետ այսորիկ թա-

զաւուրն Վռամշապուհ ամս բազումս, և հասեալ ցերկար ծերութիւն վախճանեցաւ յանկողնի իւրում խաղաղական հանգստիւ յաշխարհիս Հայոց, յիշատակ նորա աւրհնութեամբ:

Յետոյ մեռաւ Շապուհ արքայն Պարսից, և թագաւորեաց Վռամ որդի նորա, որ էր Կրմանն արքայ, յորմէ խնդրեցին Հայք իւրեանց թագաւոր զնոյն միւս անգամ զԽոսրով զեղբայր Վռամշապհոյ, զոր յառաջնումն բանսարկութեամբ նոքին մերժել զնա Հայք Շապհոյ Արքային Պարսից ի թագաւորութենէն Հայոց: Եւ նորա կատարեալ զխնդիրս նոցա թագաւորեցուցանէ նոցա զԽոսրով, զայր յոյժ ծերացեալ: Եւ եկեալ Խոսրով յաշխարհս Հայոց, և կեցեալ ամիս ութ վախճանեցաւ:

Եւ եկեալ իշխանք աշխարհին Հայոց առաջի Վռամայ Արքային Պարսից, խնդրեցին իւրեանց թագաւոր յազգէն Արշակունեաց և նա թագաւորեցոյց ի վերայ նոցա զԱրտաշէս զորդի Վռամայշապհոյ, յազգէ թագաւորացն Հայոց:

Եւ էր Արտաշէս այր մանուկ և եգամոլ, և բազում անառակութեամբ վարէր զթագաւորութիւնն: Եւ չկարացեալ այսպիսի զեղխ և մոլական վարուց թագաւորին Արտաշէսի տանել նախարարացն Հայոց. ժողովեցան միահամուռ ամենեքեան առ մեծ քահանայապետն Հայոց Սահակ, որ էր յազգէն պարթեւաց, որդի սրբոյն Ներսէսի, և ասեն ցնա. ոչ եւս կարեմք այսպիսի անարէն և պիղծ գործոց թագաւորին համբերել. վասն զի լաւ համարիմք մեռանել քան զայսպիսի գործ աղտեղութեան տեսանել և լսել հանապազաւր: Արդ քեզ նախ պարտ է այսպիսի անհնարին աղէտից խնդրել հնարս, և բառնալ ի միջոյ զայնպիսի ամբարշտեալ թագաւոր:

Եւ լուեալ զայսպիսի բանս սրբոյն Սահակայ ի նախարարացն Հայոց, պատասխանի տուեալ ասէր. իբրու թէ ոչ նոր ին[չ] լսելով այսաւր ի ձենջ ճանաչեմ զասացեալսդ ձեր, այլ գիտեմ, զի զկծեալ սրտիւք խաւսիք զայսպիսի խաւսս: Բայց արդ որպիսի հնարիւք ըստ արժան[ի] հոգևոր մարդկան զելս իրացդ գտանել մարթասցուք, զայն արժան է խորհել և առնել ամենեցուն:

Եւ նոցա առ հասարակ պատասխանի տուեալ ասեն ցսուրբ կաթուղիկոսն Հայոց Սահակ թէ մեք ամենեքեան և ոչ մի ինչ ելս և հնարս իրացդ գտանել մարթասցուք: Բայց բողոքել թագաւորին Պարսից և ի բաց բառնալ զդա ի թագաւորութենէ այդի, որում ոչ եղեւ արժանի ժառանգելոյ. այլ մեզ քան զայդ ոչ իմանալ ինչ է, և ոչ առնել: Եւ զքեզ աղաչեմք միաբանել ընդ մեզ այսմ խորհրդոյ:

Իսկ սուրբ և հոգևոր կաթուղիկոսն Հայոց Սահակ, իբրև լսէր զայս ամենայն ի նախարարացն Հայոց, և ստուգիւ ճանաչէր, եթէ ի նոյն միտս և ի նոյն խորհուրդս հաստատեալ են բաւանդակ ազգանի աշխարհին Հայոց, ի մեծ տրտմութիւն և յանմխիթար սուգ ընկղմեալ լինէր. և զեղեալ արտասուաց վտակս առաջի բազմութեան նախարարացն Հայոց, հրաժարէր առնել պատասխանի բանից նոցա մինչև ցաւուրս բազումս: Եւ արգելեալ զինքն ի սենեակ, ողբոց միայն և արտասուաց լսէին ձայնք, մերձեալք ի դուրս սենեկին. քանզի տեսանող աչաւք ի զաւրութենէ սուրբ Հոգւոյն հայէր այրն Աստուծոյ, ի սպառ սպուռ կործանումն աշխարհիս Հայոց: Իսկ զհետ բազում աւուրց համարձակեալք ոմանք յեպիսկոպոսացն, որք հանապազ պարապէին առ դուրս սրբոյն, չկարացեալք և առ վայր մի տուեալ յառաջարուղս և ի շնորհալից վարդապետութենէ առն Աստուծոյ, և այլք ի պատուական երիցանց և ի սարկաւագացն, որք ի նորին սուրբ ուխտէ հայրապետին էին, և ոմանք յազատ ազա-

տայնոյն համարձակեալք մտանէին ի ներքս, և խաւսէին ընդ նմա բանիւք ողորմանաց։ Ընդ որս ափափեալ սակաւ մի սուրբ հայրապետն ըստ հոգեւոր գիտութեան և խրատու, զոր միացեալ ունէր յինքեան ի մանկութենէ իւրմէ, լեալ դադարէր առ վայր մի։

Իսկ յետ բազում աւուրց ժողովեալ դարձեալ առ նա ամէն ազատագունդ աշխարհին Հայոց, և զնոյն բանս երկրորդեալ առաջի կաթուղիկոսին Սահակայ, խնդրէին սաստիկ ի նմանէ և զնորա միաբանութիւնն ընդ ինքեանս։ Իսկ իբրև տեսանէր սուրբն, թէ ոչ ինչ են կասեալք յառաջին կամացն և խորհրդոցն, վասն զի աւր ըստ աւրէ յաւելուած աղտեղի գործոց թագաւորին առաւել քան զառաւել աճեցուցանէր զկորստեան անձին իւրոյ զմիաբանութիւն իշխանացն, ձայն բարձեալ մեծաձայն ողբալով ասէ ցամենեսեան առհասարակ. եթէ ես, ասէ, եթէ դուք իսկ, որպէս ուսեալք յԱստուծոյ խորհիք հոգեւորապէս և տարեալ վայր մի թերութեան առն, եւ արտասուաւք թախանձեցուցանել զամէնողորմն Փրկիչն մեր, զՏէր Յիսուս Քրիստոս, յաղագս գիտի կորուսելոյն խնդրել հնարս. զի ըստ աւազանին ծնընդեանն, թէպէտ և մեղաւոր է, սակայն եղբայր և մարմին մեր է. յիշելով զվարդապետութիւն առաքելոյն Պաւղոսի, զի եթէ վշտանայ ինչ մի անդամն, վշտանան և ամենայն անդամքըն ընդ նմա. և եթէ փառաւորի մի անդամն, խնդան ամենայն անդամքն ընդ նմա։ Յիշել պարտ է և զմտաւ ածել զվիշտսն և զնեղութիւնսն, զրանդ և զկապանս սրբոյն Գրիգորի, զպաղատանսն և զաղաւթսն, զոր վասն ամենայն աշխարհիս փըրկութեան խնդրել յԱստուծոյ եգիտ։ Եւ (զ)ձեզ ըստ նմին աւրինակի պարտ է ի վերայ մեղուցեալ անդամոյն խնդրել զթողութիւն, և ոչ անաւրինաց մատնել ի ծաղր, և յայպանումն տալ զսուրբ խորհուրդ հաւատոյս մերոյ։

Յիշեցէք զսուրբ հայրն իմ և զձեր վարդապետն, և զփոխեալն յանմահական բնութեան կերպարանս, հառաչանաւք և անդադար խնդրուածովք զցայգ և զցերեկ, ածել ի գութ զամենեցունց արարիչն Քրիստոս՝ ի նոյն հաստատեաց ի մարդկային բնութիւնս։ Եւ դուք աշակերտք նորին հոգեւոր վարդապետին էք, եթէ բոլորով սրտիւ խնդրիցէք յԱստուծոյ ամենեքեան, և ջերմ հաւատով հառաչեցէք և անթերի յուսով, զամենայն հայցուածս կատարէ Աստուած։

Այլ վասն իմ որ ասէքդ, եթէ միաբանեա ընդ մեզ, ինձ քաւ լիցի մատնիչ լինել ճշմարիտ հաւատոցն մերոց, և անհաւատից զիմ մոլորեալ ոչխարն մատնել յայպանումն։ Զի թէպէտ և մեղաւոր է՝ այլ դրոշմեալ է Սուրբ Աւազանին ծնընդեամբ, հմուտ է փրկութեան խորհրդոյն, լուեալ է զքարոզութիւն աւետարանին կենաց։ Զի թէ էր հաւատացեալ թագաւորի առաջի տանել զայսպիսի յանդիմանութիւն՝ թերևս համարձակէի յուսով գիտի կորուսելոյն, այլ կշտամբել զհաւատացեալ առաջի անհաւատից ոչ հաւանիմ, այլ ինձ քաւ լիցի մեռանել, քան թէ զօք ի հաւատացելոց՝ վասն անարժան գործոց մատնել անաւրինաց։ Զի թէպէտ և իցէ պոռնիկ, այլ զկնիք հաւուրն Քրիստոսի կրէ յանձին իւրում, զիջացեալ ասէք մարմնով, այլ ոչ անհաւատ և հեթանոս, զեղծեալ է՝ այլ ոչ կրակապաշտ. տկարացեալ է ի կանայս՝ այլ ոչ ծառայէ տարերց. միով ախտանայ ցաւով՝ այլ ոչ վարակեալ ամենայն ախտիւք իբրև զամբարիշտ։ Եւ զի՞արդ զսակաւամեղն ամբարշտելոցն մատնել խորհիցէք ի սատակումն։ Քաւ լիցի ձեզ որդիք, մի՛ խորհիք զխորհուրդդ զայդ, և զբնիկ զձեր զտեարսն, որպէս ոմանք ի ձեր նախնեացն, կորուսանել մի ջանայք։

Զայս, եւ առաւել քան զայն բանս և գիրս, բազում աղերսիւ և արտասուաւք խաւսեցեալ անձանձրոյթ Սուրբ կաթուղիկոսին Սահակայ ընդ աւագանին Հայոց, ոչինչ կարաց զնոսա յառաջին միաբանութենէն և ի խորհրդոյն, զոր հաստատեալ էին ի միտս իւրեանց, ի բաց դարձուցանել։ Քանզի եկեալ հասեալ էր ի վերա նոցա նզովք սրբոյ առն Աստուծոյ Ներսէսի՝ ի գլուխ զգործն հանէր։ Միաբանութեամբ պատասխանի արարեալ ամենեցուն քահանայապետին սրբոյն Սահակայ և ասեն. փոխանակ զի ոչ լուար բանից մերոց, և ի միաբանութենէս մերմէ զանձն քո ի բաց դարձուցեր, գիտասջիր, զի որպէս եղեալ ի մտի չթագաւորել նմա եւս ի վերա մեր, ջանամք զքահանայանալ և ոչ քեզ առ յերկարսն ի վերայ աշխարհիս մերում։ Եւ զայս այսպէս ասացեալ ամենայն աւագ տանուտէրաց աշխարհիս առաջի սրբոյ հայրապետին Սահակայ՝ ելին զայրացեալք ի խրատուէ սրբոյն, և այլ ոչ եւս կամեցան դառնալ առ երանելի հայրապետն. զի էր զնոսա շրջափակեալ և պաշարեալ անիծից երանելոյ քահանայապետին սրբոյն Ներսէսի։

Եւ այնուհետեւ միաբանեալ գնացին ի դուռն արքային Պարսից, և երթեալք անդ յանդիման եղեն թագաւորին Պարսից Վռամայ, ընդ որս էր և երէց մի Սուրմակ անուն, ի գաւառէն Բզնունեաց, ի գեղջէ որ կոչի Արձկէ, ի տոհմէ քահանայից գաւառին մեկուսանայր, որոյ միաբանեալ ընդ նախարարսն Հայոց, ճեղքեալ ի խրատուէ սրբոյ հայրապետին Սահակայ խաւսէր զբանս [անհանճարս] և առաւել աղաղակս քան զամենայն նախարարսն Հայոց զթագաւորէն Արտաշէսէ առաջի աւագորերոյն Պարսից. շնորհ առնելով նախարարացն Հայոց, յաղագս խոստանալոյ նմա ոմանց յաւագանոյն Հայոց զաթոռ կաթուղիկոսութեան աշխարհիս Հայոց։ Եւ ծանուցեալ նախագոյն զպատճառս տրտնջելոյն իւրեանց Սուրենայ և այլ աւագանոյն Պարսից. քանզի Սուրեանն Պալհաւ՝ էր ի ժամանակին յայնմիկ հազարապետ ի դրան արքունի. և հանդերձ նովաւ և այլ մեծամեծաւք դրանն հաւանեցին զբան ամբաստանութեան առ Վռամ արքայն Պարսից։

Եւ լուեալ արքային զայսպիսի բողոք յազատանոյն Հայոց՝ ոչ թոյլ տայր նոցա խաւսել առ վայր մի առանց գալոյ ոսոխին ի դուռն։ Վաղվաղակի դեսպանս արձակէր զթագաւորէն Հայոց Արտաշէսէ առ ինքն ճեպով գալ հրամայէր. գալ ընդ նմա գրէր մեծի քահանայապետին Սահակայ։

Եւ եկեալ նոցա ի դուռն հարցանէր նախ առանձինն արքայն Պարսից զթագաւորն Հայոց զԱրտաշէս, թէ զինչ են իրքդ, յաղագս որոյ ամբաստանեն զքեզ նախարարքդ Հայոց։ Եւ նորա պատասխանեալ ասէր, թէ ամենեւին ոչ գիտեմ զինչ խաւսին և չարախաւսեն զորա զինէն. այլ որպէս սովոր են ի բնէ թշնամանել զտեարս իւրեանց՝ ըստ նմին աւրինակի և այժմ [կամին] կատարել զչար կամաց իւրեանց զխնդիրս. քանզի միշտ իշխանափոխք լինել են և տիրատեացք։ Եւ թագաւորն արեաց Վռամ հրաման տայր միայն ընդ միայն կոչել առ ինքն զսուրբ կաթուղիկոսն Հայոց զՏէր Սահակ. քանզի մեծարէր զնա, նախ, վասն տոհմականութեան առն, և դարձեալ՝ զի առաջի անհաւատիցն յարգոյ և պատուական ցուցանէ զսուրբ ծառայս իւր Տէր։ Եւ հարցեալ ցերանելի կաթուղիկոսն կամէր լսել ի նմանէ զնմանս բանիցն չարախաւսացն թագաւորին Հայոց։ Իսկ նորա պատասխանեալ ասէր. եթէ ոչ գիտեմ զինչ խաւսին նոքա զնմանէ. նոքա իսկ ասասցեն, և դուք լուարուք ի նոցանէն. և որպէս ասեն առաջի ձեր յանձինս իւրեանց ընդունին զհատուցումն. զիս ինչ յայդպիսի իրն-

դիրս բանից մի հարցանէք. զի ոչինչ լսելոց էք յինէն յաղագս չարախաւսութեանդ այդորիկ չար և կամ բարի:

Ապա կոչէր առ ինքն թագաւորն զՍուրէնն Պահլաւ, զիւր զհազարապետըն, որ ազգական և տոհմակից էր մեծի քահանայապետին Սահակայ, որպէսզի միաբանեալ և նորա ընդ այլ նախարարսն Հայոց վկայեսցէ չարախաւսութեան նոցա, և պատուեալ բազում պարգեւաւք և մեծապէս շքեղութեամբ դարձցի յիշխանութիւն կաթուղիկոսութեան իւրոյ աշխարհն: Եւ Սուրէնայ երթեալ զպատգամս արքայի առ երանելին Սահակ խոստանայր նմա ըստ ասացուածին Վռամա, և շքեղութիւն մեծ գտանել ի թագ[աւորէն, թէ հաւանեալ] ասէ. կամաց նորա [տացես վկայութիւն] նախարարացն Հայոց՝ մեծարեալ բազում պատուաւք գտանես յիշխանութիւն քո. ապա եթէ այլազգագոյնս ինչ խորհիս յամառեալ և զքո կաթուղիկոսութեան տունն կորուսանէս ի քէն, և յիշխանութենէդ զոր ունիս մերժեալ լինիս. և վասն զի ազգակից քո եմ և զբարին քո կամիմ, և ոչ զթշնամութիւն, քանզի և տամ քեզ սիրով զայսպիսի խրատ: Եւ այսպիսի բանիւք ջանայր հաւանեցուցանել զսուրբ հայրապետն Սահակ: Քանզի կամէին ի միջոյ բառնալ զթագաւորութիւնն Հայոց:

Իսկ սուրբն և բնաւ իսկ յանձն ոչ առնոյր այսպիսի բանից տալ վկայութիւն իշխանացն Հայոց, այլ հաստատեալ ի միտս ասէր, եթէ ես զԱրտաշէսէ այնպիսի ինչ վատթարութիւն իսկ ոչ գիտեմ, որով արժան է ի ձէնջ դատելոյ և անարգանաց. զի թէպէտ և ըստ սրբասէր մերոյ աւրինացն անարգանաց արժանի է և անգոսնելոյ, այլ ըստ հրամանի ձեր աղտեղասէր աւրինացդ գովութեան արժանի է և մեծարանաց:

Եւ լուեալ զայս պատասխանի Սուրէնայ ի մեծ հայրապետէն Հայոց Սահակայ յիւրմէ տոհմակցէն, և պատմեալ թագաւորին արեաց՝ ի ցասումն զայրացման գրգռեալ թագաւորն՝ հրաման տայր այնուհետև բազմամբոխ ատենին հարցանել զնախարարսն Հայոց և զԱրտաշէս: Եւ կուտեալ իշխանացն Հայոց բազում աղտեղաբանութիւն և ազգի ազգի խաւս անարժանութեան ի թագաւորն իւրեանց. քանզի ոչ եթէ զեղեալսն եսթ ի նմա զիրսն խաւսէին այլ եւս յաւելուծովք ըստ աւրինի թշնամութեան կուտէին ի վերայ նորա բազում վնասս, որ թէպէտ և յուրասատ եղեալ Արտաշէսի, թէ չէ այդպէս, ոչ հաւատային լսողքն, եղեալ զկամս իւրեանց բառնալ ի միջոյ զթագաւորութիւնն յԱրշակունեաց ազգէն. մանաւանդ զի լուաւ եւս թագաւորն արեաց ամենայն աւագանով դրանն ի դատախազացն Արտաշէսէ, թէ բնաւ զի իսկ պիտոյ է մեզ թագաւոր. այլ իշխան պարսիկ ըստ ժամանակի եկեալ վերակացու լիցի մեզ, որ զիւրաքանչիւր ուրուք ի մէնջ ծառա[յ]եալ զհպատակութիւն և զանհպատակութիւն ցուցցէ ձեզ]:

[Եւ լուեալ զայս Վռամայ] հանդերձ աւագանով դրանն՝ յոյժ [ուրախանայր] և այնուհետև հրաման տայր վաղվաղակի ի բաց առնուլ զթագաւորութիւնն յԱրտաշէսէ. ընդ նմին և զտունն կաթուղիկոսութեանն ի սրբոյն Սահակայ (և) յարքունիս առնել, փոխանակ զի ոչ միաբանեցաւ տալ վկայութիւն ընդ նախարարսն Հայոց: Եւ այսպէս վճարեալ հրաման թագաւորին Պարսից ի գլուխ ելանէր: Եւ յայնմհետէ բարձաւ թագաւորութիւնն յազգէն Արշակունեաց ի վեցերորդ ամին Արտաշէսի, ըստ բանի երանելոյ առն Աստուծոյ մեծի քահանայապետին Ներսէսի, և անկաւ աշխարհս ընդ լծով չար ծառայութեան անաւրէն իշխանութեանն Պարսից: Եւ առեալ զինս իշխանացն Հայոց ի թագաւորէն Պարսից ընդ մատնութեան Արտաշէսի, պատիւս և մեծութիւնս, նման արծաթոյն զոր

ափն ընդ Յովսէփայ եղբարքն, ընդ մատնութեանն յիսմայելեաց ի վաճառականացն, և այսպէս հրաժարեալք ի գրանէ եկին յաշխարհն իւրեանց։

Եւ տանուտէրացն Հայոց, որոց խոստացեալ էին զկաթողիկոսութիւնն Սարմկայ Արձկէի երիցու, նստուցին զնա յաթոռ քահանայապետութեանն Հայոց։ Յորում, յետ սակաւ ժամանակի ինչ անցելոյ, ընդդիմացեալ ոմանց ի զաւրաւոր իշխանացն Հայոց՝ մերժեցին յիշխանութենէ կաթուղիկոսութեան։ Եւ յայնմհետէ առաքեցաւ նախ ի Վռամայ արքայէն պարսից յաշխարհս Հայոց մարզպան պարսիկ. և յայնմհետէ եղեն [ի սպառ սպուռ] ընդ լծով ծառայութեան անաւրէն ազգին պարսից եւ կատարեալ եղ ի գլուխ [բանն] անիծից մեծի քահանայապետին Ներսէսի, զոր յաղագս առաւելապէս անձեռնել առ քան զաւր ի թագաւորական տոհմին Արշակունի գործք անաւրէնութեան չարեացն, զոր կամակարութեամբ համարձակեալք միշտ գործէին անամօթեալք։ Մանաւանդ յորժամ ետես սուրբն Ներսէս զմահն արդար, զոր հատոյց Արշակ ի վերայ Գնելոյն եղբաւր որդոյն իւրոյ, և չկարացեալ հանդուրժել այնպիսի անաւրէն գործոց սուրբ այրն Աստուծոյ Ներսէս, զայրացեալ սրտիւ, բստ գրեցելոյ ի պատմութեանն (ի պատմութեանն) երկրորդումն ճառին հնգետասաններորդի, որ ասաց թէ փոխանակ զի յաճախեցեր ի չարիս մեծամեծս առաւել քան զհայրն քո Տիրան, և քան զայլ նախնիսն քո որք եղեն չարք եւ ամբարիշտք յազգէն Արշակունեաց, և ոչ նախանձեալ նմանեցեր լաւացն և առաքինի արանցն եղելոց ի տոհմին քում, որոց ժառանգեալ զպատիւ թագաւորութեանն հարցն իւրեանց առաւել եւս փութացան լինել ժառանգորդք բարի գործոց երկնից արքայութեանն. այլ առ քան զաւր անձեռնել ի քեզ առանց պատկառանաց զամենայն պղծութիւնս լցեալ կատարեցեր. ի վերայ ամենայնի այսորիկ զսուտ և պատճառ հնարման արդար արեան եղբաւրորդոյն քո Գնելոյ. արդ եղիցիս դու հեղեալ յերկիր իբրեւ զջուր լուալեաց, և ի լարել աղեղանց բարձրելոյն ակարասցիր։ Եւ կործանումն, որ բերանով մարգարէին ասացաւ, հասեալ է ի վերայ ձեր, ըմպել ազգիդ Արշակունեաց զյետին բաժակն և արբջիք և կործանեսջիք։ Հանգերձ և այլեւս յաւելուածովք ծանր և ահագին, զոր ասացեալ է սրբոյ քահանայապետին ի վերայ ազգիդ Արշակունեաց։

Խնդրեցին այնուհետեւ իւրեանց կաթուղիկոս յարքունուստ նախարարքն Հայոց, և թագաւորն Վռամ ետ նոցա զԲարգէշ զոմն անուն, այր Ասորի յազգէ, որ եկեալ յաշխարհս Հայոց իւրովք գաւառակցաւք, որք կէին լոյծ կրաւնիւք, եկեալքն ընդ նմա յԱսորեստանէ, բստ սովորութեան իւրեանց աշխարհին տանտիկնայիւք. և ոչ կէին բստ սուրբ և ամբիծ կրաւնիցն, զոր ուսուցեալ և կարգեալ է յեկեղեցիս Հայոց սրբոյ նահատակին Գրիգորի։ Եւ տաղտկացեալ մեծամեծ տանուտեարքն Հայոց և ազատ սեպուհք և ամենայն ժողովրդոցն բազմութիւնք ընդ վարս մարդկանն, որք եկեալ էին ընդ Բարգիշոյի, որք ոչ հաւասարեալ հանգոյն կրաւնից և վարուց հրեշտակակրաւն վարդապետութեան սրբոյ նահատակին Գրիգորի, որով վարժեալ զամենեսեան ուսոյց և հաստատեաց բստ կարգի վերին քաղաքավարութեան։ Առաւել եւս սուգ առեալ հեծէին անմխիթար սրանչելի քահանայք սուրբ եկեղեցւոյ, որ յառաքելանման աջոյ հայրապետին Սահակայ ձեռնադրեալքն էին։ Եւ չկարացեալ հանդուրժել առ ի յերկարան այնպիսի զեղխ և անարժան կարգի՝ ի քահանայապետութենէն Հայոց խոտեալ մերժեցին զԲարգէշ, ծանուցանելով թագաւորին Վռամայ, եթէ ոչ են կարգք սորա և վարք բստ կարգի մերոյ աշխարհիս ուսման. բայց տուր մեզ այլ առաջնորդ բստ մերում բնիկ կարգիս, որ եղեալ վերակացու կալցի հաստատուն զկարգ-

սուրբ եկեղեցւոյ։ Եւ Վռամայ արքային հաւանեալ կամաց խնդրոյ նոցա՝ տայր
նոցա առաջնորդ դարձեալ այլ ասորի, որում անուն էր Շմուէլ, որ եկեալ յաշ-
խարհս Հայոց կայր և նա նոյնպէս լոյծ կրանիւք ըստ կարգին Բարգիշոյի, և
սակաւ ինչ ժամանակս կեցեալ վախճանէր յաշխարհս Հայոց։

Եւ տեսեալ ամենայն տանուտերց աշխարհիս Հայոց ազատ սեպհաց և բաւ-
ընդակ բազմութեան ուխտէ եկեղեցւոյ, և ժողովրդոց ի միասին արանց և կա-
նանց, զսուրբ և զանարատ և զառաքելաշնորհ վարդապետութիւն, զոր սերմա-
նեալ ածեցոյց ի նոսա սուրբն Գրիգորիոս, և նորին զաւակքն, որք ուսուցին
զճշմարիտ և զարդար ուսումն ամենայն լսողացն. որ զինքեանք նման երանելի
առաքելոցն ընկալան, ոչ ի մարդկանէ և ոչ ի ձեռն մարդոյ, այլ յազդեցու-
թենէ Սուրբ Հոգւոյն շնորհաց։ Քանզի դարձեալ ժողովեցան միահամուռ և
դիմեալ բուռն հարկանէին զոտից Սրբոյ առն Աստուծոյ Սահակայ, աղերս
թախանձանաց և բազմազեղ արտասուս արկեալ առաջի ճշմարիտ քահանայա-
պետին, և ասէին. մեղաք յերկինս և առաջի քո. թող մեզ մեղուցելոցս և ձեւա-
ցոյ զքեզ ըստ աւրինակի բարէպաշտ քաջ նահատակին Գրիգորի, նախնոյն քո,
որ ոչ յիշեաց զայնչափ տանջանսն և զքերանսն, զոր անցուցին ընդ նա նախ-
նիքն մեր. այլ նմանեալ արարչին ամենեցուն և հատոյց բարի փոխարէնս
փոխանակ չարեացն, զոր հասուցին ի վերայ նորա. եւ ծանուցեալ ամենեցուն
հաւանելոց նմա վարս երկնաթռիչս և ճանապարհս Աստուածգիտս, և ուսոյց
ամենեցուն առնել հանապազ. թող մեզ զպարտս մեր ըստ մեր թողլոց մերոց
պարտապանաց։

Արդ եղեր և դու անդադար վարդապետ մեր սորին փառաւորութեան,
տպաւորեաց ի քո անձդ զնոյն համբերութեան աւրինակ, և թող մեզ զպարտս
մեր եւ ջանս եդեալ խնդրեմք ի դրանէ հաստատել զքեզ ի բնիկ հայրենի աթոռ
կաթուղիկոսութեան սուրբ եկեղեցւոյ, յորմէ լուսաւորեալ տեսաք զայս անմա-
տոյց արդարութեան արեգակն։ Եւ մի խառնեսցի պղտորումն ընդ յստակ և
ականակիտ վարդապետութեան սրբոյ առաքելանման հայրապետին Գրիգո-
րի. քանզի ահա դեռ թուլացեալ մեղկին լոյծ առաջնորդաց կնիք հաւատոյ
անարատ քարոզութիւն սրբոյն, և ահա կորնչիմք մեք և ծնեալքս ի մէնջ
զյաւիտենական կորուստն։

Այսպէս և առաւել քան զսոյն բանս աղաչանաց խաւսեցեալ միաբանու-
թեամբ ամենայն բազմութեանն ի բազում աւուրս ընդ սրբոյն ի տուէ և ի
գիշերի անդադար ամենեքին ոչ կարացեալ խոնարհեցուցանել զմիտս առն
ճշմարտի ի բանս խանդաղատականս պաղատանաց իւրեանց։ Այլ խաղա-
ղական պատասխանատուութեամբ ասէր ցամենեսեան, եթէ ես ոչ ուսայ յերկնա-
ւոր արարչէն և ի վարդապետէն Քրիստոսէ բարկանալ ումեք, որ եւ ի խաչին
յաղագս խաչահանուացն աղաչէր զհայր չհամարել նոցա զայն մեղս. որ և մեզ
ցանկ բողոքէ ասելով. Աւրհնեցէք զհալածիչս ձեր, բարի արարէք ատելեաց
ձերոց։ Այլ քահանայանալ ի վերայ տիրանենգ և տիրասպան և մատնիչ ժողո-
վրդոց ոչ կարեմ. քանզի Սուրբ Հոգին, որ ծնաւն զմեզ աւազանաւն ժառան-
գակիցս լինել Քրիստոսի, նոյն ասաց երկնաքաղաքացի արամբն Պաւղոսիւ,
թէ մի՛ դատիք, զի մի դատապարտեսջիք. և դուք որ կարող էք զտկարութիւն
տկարացն բարձէք. և դարձեալ՝ թէ իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից,
ասէ Տէր։ Արդ դուք ձեզէն եղէք վրէժխնդիր թագաւորին ձերոյ զործոցն, և
զայրացեալք նմա զսուրբ հաւատ ուխտին մերոյ մատնեալ ծաղր եդայք առնել
անաւրինին։ Եւ զիս ի՞ւ արդեաւք ջանայցէք մխիթարել, և կամ ում թախանձե-

ցուցանէք բաժանելյանս, որ զկիրաւոր ուխտ հաւտին Քրիստոսի տեսանեմ ոչ պատել ձիթով, և գինով ածել զվէրսն և եդեալ ի վերայ գրաստու, և տարեալ ի պանդոկոչն, այլ յաւշեալ յանխնա [եւ] առաջի գիշակեր գազանացն ընկեցեալ յաւձառումն։ Երթեալ յինէն ի բաց և թոյլ տուք ինձ ողբալ ընթանուր զկորուստ աշխարհիս Հայոց, զոր տեսանեմ աչաւք մաւք ի զաւրութենէ վերին ցուցակութեանն։ Բազում անգամ աղաչեցին զսուրբն Սահակ գալ յաթոռ հայրապետութեան իւրոյ և ասէ. մի՛ բռնադատէք զիս ի վերայ բեկման ժողովրրդեան իմոյ, վասն զանզս ակետիս այսորիկ յառաջ քան զձեռնադրելն զիս յեպիսկոպոսութիւն եցոյց ինձ վերին կանխատեսութեանն գիտութիւնն յանուրջս, ըստ աւրինակի մարգարէական տեսութեանն, որ ցուցաւ սուրբ նահատակին Գրիգորի, ի գիտութիւն իրացն առ յապա եղելոցն։ Զոր և ձեզ պատմել այսաւր բռնադատիմ առն եղեալ սրտի իմոյ, և ցուցանիմ անգգամ, որպէս սուրբ առաքելին Աստուծոյ Պաւղոս, յաղագս սուտ առաքելոցն և անաւրէն մշակացն գրեաց պարծելով առ Կորընթացիսն յիւր ձգնութեանցն հանդէսն։

Н. БОГАРЯН

(Иерусалим)

## НОВООТКРЫТЫЙ ФРАГМЕНТ „ИСТОРИИ АРМЕНИИ" ЛАЗАРЯ ПАРБЕЦИ

### Резюме

Полный список „Истории Армении" выдающегося историографа V века Лазаря Парбеци относится к XVII веку. Однако в Гомилиарии хранилища манускриптов Иерусалимского Армянского патриархата (рукопись № 1), переписанной в 1419 году, нами обнаружен пространный отрывок из „Истории Армении" Л. Парбеци, который соответствует 12—28 страницам научного издания 1904 года. Этот отрывок имеет интересные разночтения.

Данный фрагмент публикуется полностью в целях использования его разночтений при последующих изданиях текста „Истории" Л. Парбеци.

N. BOGHARIAN

(Jérusalem)

## UN FRAGMENT RECEMMENT DECOUVERT DE „L'HISTOIRE D'ARMENIE" DE LAZARE PARBETSI

„L'Histoire d'Arménie" du célèbre historien du V<sup>e</sup> siècle Lazare Parbétsi nous est parvenue dans un manuscrit datant du XVII<sup>e</sup> siècle.

Il nous a été donné, récemment, de découvrir dans le Recueil d'Homélies, recopié en 1419 (ms no. 1 de la Bibliothèque des manuscrits du Patriarcat arménien de Jérusalem), un long fragment de l'ouvrage précité.

Ce fragment, qui présente d'intéressantes variantes, correspond aux pages 12—28 de l'édition critique de 1904.

Nous le publions intégralement aux fins d'utilisation de ces mêmes variantes dans les éditions ultérieures de „l'Histoire" de Lazare Parbétsi.